Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի

# ԲԼՈԿՆՈՏ

№ 6 ՄԱՐՏ 1958

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78:*





# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՆՈՐ ԷՏԱՊԸ

*Արդյունաբերության հետ միասին գյուղատնտեսության զարգացումը շարունակ գտնվել է պարտիայի և Սովետական կառավարության ուշադրության կենտրոնում: Պարտիայի XX համագումարը նոր ուղիներ նշեց գյուղատնտեսության հետագա զարգացման համար: Համագումարի որոշումը ելնում էր արդյունաբերությունը՝ գյուղատնտեսական հումքով, իսկ բնակչությանը՝ կենսամթերքներով բավարարելու անհրաժեշտությունից: Սովետական ժողովուրդը անշեղորեն կենսագործելով պարտիայի XX համագումարի պատմական որոշումները, կարճ ժամանակամիջոցում խոշոր հաջողություններ ձեռք բերեց ինչպես արդյունաբերության, այնպես էլ գյուղատնտեսության զարգացման ուղղությամբ:*

*Այդ նպատակին է ուղղված վերջերս ՍՄԿՊ Կենտկոմի Փետրվարյան պլենումի կողմից ընդունված՝ «Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և մեքենա-տրակ-*

տորային կայանները վերակազմելու մասին» պատմական որոշումը։ Պլենումը նշեց, որ ինչպես միշտ, այնպես էլ այժմ մեր ժողովրդական տնտեսության մեջ առջևից ընթանում է սոցիալիստական արդյունաբերությունը, առաջին հերթին ծանր ինդուստրիան, որի հիման վրա հաջողությամբ զարգանում են արդյունաբերության մնացած ճյուղերը, ինչպես նաև գյուղատնտեսությունը։ Պարտիայի XX համագումարից հետո, անցած երկու տարում արդյունաբերության արտադրանքի թողարկումն ավելացել է 22 տոկոսով, իսկ ծանր ինդուստրիայի արտադրանքը՝ գրեթե 24 տոկոսով։ Այդ ժամանակամիջոցում ազգային եկամուտը աճել է 18 տոկոսով, իսկ բանվորների և ծառայողների ռեալ եկամուտներն ավելացել են 10 տոկոսով։

Արդյունաբերության բուռն վերելքը նպաստավոր պայմաններ ստեղծեց սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման համար։ ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումից հետո կոլտնտեսային աշխատավորությունը լայն պայքար ծավալեց հողագործության և անասնաբուծության մթերքների արտադրությունը զգալիորեն ավելացնելու գործում։ Խամ և խոպան հողերի յու-



րացումը խոշոր չափով ընդլայնեց հացահատիկային տնտեսության բազան, որը հնարավորություն տվեց վերջին չորս տարում երկրում հացահատիկի համախառն բերքը, նախորդ քառամյակի համեմատությամբ, ավելացնել 27 տոկոսով։ Ավելացել է նաև տեխնիկական կուլտուրաների՝ շաքարի ճակնդեղի, բամբակի, երկարաթել վուշի, ինչպես նաև կարտոֆիլի, բանջարեղենի և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների արտադրությունը։

Պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը կարճ ժամանակամիջոցում հաղթահարեց անասնաբուծության տևական ետ մնալը։ 1953 թվականից մինչև 1957 թվականը խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ավելացավ 10,9 միլիոն գլխով, խոզերինը՝ 11 միլիոնով, ոչխարներինը՝ ավելի քան 20 միլիոնով։ Մսի արտադրությունը, հաշվի առնելով նախրի աճը, ավելացավ 38 տոկոսով, այդ թվում կոլտնտեսություններում ու սովխոզներում՝ գրեթե 80 տոկոսով, կաթի արտադրությունը՝ 50 տոկոսով, իսկ կոլտնտեսություններում ու սովխոզներում՝ ավելի քան երկու անգամ։ Այժմ գյուղատնտեսության ֆրոնտի աշխատավորները մեծ շարժում են

սկսել մոտակա տարիներում բնակչության մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ հասնել Ամերիկայի Միացյալ Նահանգներին։

Կոլտնտեսությունների ամրապնդման, նրանց եկամուտների ավելացման հետ միասին տարեցտարի բարձրացել է կոլտնտեսականների աշխօրերի վարձատրությունը։ Կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը 1953 թվականի սկզբներին եղած 63,1 միլիարդ ռուբլուց 1957 թվականի սկզբներին հասան 98,6 միլիարդ ռուբլու։ Նույն տարիների համեմատությամբ հանրային և անձնական տնտեսությունից կոլտնտեսականների ստացած եկամուտներն ավելացել են 33 տոկոսով։

Պարտիայի հոգատարության շնորհիվ սոցիալիստական գյուղատնտեսությունը զինվեց առաջավոր տեխնիկայով՝ տրակտորներով, կոմբայններով, բեռնատար ավտոմոբիլներով և ժամանակակից այլ մեքենաներով։ Վերջին չորս տարում երկրի գյուղատնտեսությունը ստացել է 908 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած), 293 հազար հացահատիկային կոմբայն, 143 հազար սիլոսի և եգիպտացորենի կոմբայն, 467 հազար բեռնատար ավտոմոբիլ։ Կոլ-



տնտեսություններում և ՄՏ կայաններում աճել են գյուղատնտեսական գիտելիքներով զինված հազարավոր կադրեր ու ընդունակ կազմակերպիչներ, որոնք հմտորեն օգտագործելով եղած ռեզերվներն ու հնարավորությունները առաջ են մղում կոլտնտեսությունների արտադրությունը։

Կոլտնտեսային կարգի ամրապնդման, նրա տնտեսական հզորության բարձրացման, բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության դաշինքի ամրապնդման գործում խոշոր դեր խաղացին մեքենատրակտորային կայանները։

ՄՏ կայանները քաղաքական ու կազմակերպող մեծ ուժ հանդիսացան։ Գյուղի աշխատավորները սիրով էին միավորվում կոլտնտեսություններում և համոզվում խոշոր մեքենայական գյուղատնտեսության առավելությունների մեջ։ ՄՏ կայանների միջոցով գյուղատնտեսությունը վերազինվեց բարձր տեխնիկայով, իրագործվեց մեխանիզատորական կադրերի պատրաստումը, հողագործության և անասնաբուծության կուլտուրայի բարձրացումը։ Վերջին շրջանում ՄՏ կայանները հսկայական աշխատանք կատարեցին գյուղատնտեսության առանձին ճյուղերի ետ մնալը վերացնելու

և գյուղատնտեսության հարցերի վերաբերյալ պարտիայի ընդունած որոշումների իրականացման գործում։

Պլենումը միաժամանակ նշեց, որ ներկա պայմաններում, երբ կոլտնտեսությունների մեծամասնությունը տնտեսապես և կազմակերպչորեն ամրապնդվել է, երբ աճել են գյուղատնտեսական արտադրությունը կազմակերպող հիանալի կադրեր, ՄՏ կայանների միջոցով կոլտնտեսությունների արտադրա-տեխնիկական սպասարկման գոյություն ունեցող ձևը այլևս չի համապատասխանում գյուղատնտեսության արտադրողական ուժերի զարգացման պահանջմունքներին։ Ավելին, այդ ձևը շատ դեպքերում սկսել է արգելակել կոլտնտեսությունների հետագա վերելքը, կաշկանդում է կոլտնտեսությունների ունեցած ռեզերվները ավելի լայն մասշտաբով օգտագործելու հնարավորությունները։ Երևան է գալիս այդ դրության բացասական հետևանքները, երբ միևնույն հողում տնտեսությունը վարում են սոցիալիստական երկու ձեռնարկություններ՝ կոլտնտեսությունը և ՄՏ կայանը։ Դա առաջ է բերում դիմազրկություն և նվազեցնում պատասխանատվությունը բերքատվու-



թյան բարձրացման համար, առաջ է բերում զուգահեռաբար գործող կառավարչական ապարատի պահպանման մեծ և ավելորդ ծախսեր։

Պլենումը, ելնելով գյուղատնտեսության հետագա վերելքի, կոլտնտեսային կարգի զարգացման շահերից, անհրաժեշտ համարեց փոխել կոլտնտեսությունների արտադրա-տեխնիկական սպասարկման գոյություն ունեցող կարգը և աստիճանաբար վերակազմել մեքենա-տրակտորային կայանները, որոնք մեծ դեր կատարելով հանդերձ, շատ բանով սպառել են իրենց հիմնական ֆունկցիաները։ Կոլտնտեսությունների տնտեսական ամրապնդումը, մասնագետ կադրերի առկայությունը այժմ հնարավորություն են տալիս նրանց ձեռք բերել, պետությունից գնել իրենց անհրաժեշտ գյուղատնտեսական մեքենաները և ավելի արտադրողաբար օգտագործել դրանք։ Հաշվի առնելով շրջանների և կոլտնտեսությունների առանձնահատկությունները, պլենումը նշեց, որ ՄՏ կայանները պետք է տարբեր ժամկետներում վերակազմել նորոգման-տեխնիկական կայանների, որոնց վրա պարտականություն է դրվում ապահովել տրակտորների և մյուս մեքենաների

վերանորոգումը և անհրաժեշտ օժանդակ նյութերի մատակարարումը (վաճառքի միջոցով)։ Այն կոլտնտեսությունները, որոնք հնարավորություն չունեն մեքենաներ ձեռք բերել կամ դրանք օգտագործել, ժամանակավորապես պահպանվելու է նրանց սպասարկումը ՄՏ կայանների կողմից։

«Կոլտնտեսություններին տրակտորների և գյուղատնտեսական մյուս մեքենաների վաճառքը և ՄՏ կայանների վերակազմումը,— ասված է պլենումի որոշման մեջ,— կուժեղացնի արդյունաբերության և գյուղատնտեսության տնտեսական անմիջական կապերը, է՛լ ավելի կամրապնդի բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքը, կբարձրացնի կոլտնտեսությունների էկոնոմիկան, կնպաստի կոլտնտեսություններին առհավետ ամրացված հողի լավագույն օգտագործմանը, որը պատկանում է ամբողջ ժողովրդին։ Դրա հիման վրա կավելանան անբաժանելի ֆոնդերը, կաճեն միջկոլտնտեսային կապերը, որը կարևոր պայման կլինի կոլտնտեսային սեփականությունն ամրապնդելու և զարգացնելու համար, կնպաստի՝ այն համաժողովրդական սեփականության մակարդակի բարձրացնելու գործին»։



Պլենումը հավանություն տվեց «Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու մասին» ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսներին և որոշեց այն դնել համաժողովրդական քննարկման։

Կոլտնտեսային աշխատավորությունը բուռն խանդավառությամբ ընդունեց ՍՄԿՊ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումը։ Մեր մեծ Հայրենիքի բոլոր կոլտնտեսականների հետ միասին, մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության ֆրոնտի աշխատավորները իրենց բազմամարդ ժողովներում ներկայումս քննարկում են այդ հարցը։

Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու մասին որոշումը կոլտնտեսականները, մեխանիզատորները գյուղատնտեսության ֆրոնտի մասնագետները, և սովետական ողջ ժողովուրդն ընդունում են, որ այն բխում է իրենց սրտից, որ այդ որոշումը պարտիայի ու Սովետական կառավարության հոգատարության մի նոր փայլուն ապացույց է աշխատավորության նկատմամբ։ Այդ որոշմամբ, ասում են նրանք պարտիան մի նոր ուղի է բացում կոլտնտեսությունները տնտեսապես է՛լ ա-

*վելի ամրապնդելու, կոլտնտեսականների եկամուտները ավելացնելու, նրանց ստեղծագործական նախաձեռնությունները բարձրացնելու, երկրում գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու համար։*

*Ռեսպուբլիկայի կոլտնտեսային աշխատավորները ջերմորեն ընդունելով Կենտկոմի պլենումի որոշումը,— միաժամանակ խոսք են տալիս ոչ մի ջանք չխնայել նոր ուժով ու եռանդով լծվել գործի, կազմակերպված ու սեղմ ժամկետում ավարտել գարնանացանը, ավելացնել հացահատիկային կուլտուրաների բերքատվությունն ու անասնաբուծության մթերատվությունը, բոլոր ուժերը գործադրել պլենումի որոշումներն անշեղորեն կենսագործելու, բնակչության մեկ շնչին ընկնող կաթնամթերքների՝ յուղի, կաթի, մսի արտադրությամբ Ամերիկայի Միացյալ Նահանգներին հասնելու և անցնելու համար։*

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ՋՐՈՒՅՑ ԲԱՐՁՐ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՄԲ ԱՇԽԱՏԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Ս. ՍԱՐԳՍՅԱՆ

*Նշանակալի են Կիրովականի «Նոր ուղի» կոշիկի ֆաբրիկայի արտադրական հաջողությունները։ Միայն 1957 թվականին կոշկագործները Հայրենիքին տվեցին այնքան արտադրանք, որքան ֆաբրիկան չէր թողարկել նախորդ երեք տարիներում միասին վերցրած։ Այսպես, 1954—56 թ. թ. արտադրված 70 հազար զույգ կոշկեղենի դիմաց, անցած տնտեսական տարում արտադրվեց 78 հազար զույգ կոշիկ՝ տղամարդու, կանացի և դպրոցական հասակի երեխաների համար։*

*Աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, մոդելային նոր, բարձր որակի կոշիկների թողարկումը յուրացնելու շնորհիվ, ֆաբրիկայի կոլեկտիվը քաղաքում առաջինը անցավ յոթ ժամյա աշխատանքային օրվա։*

Իսկ ինչպե՞ս ձեռք բերվեցին այդ նվաճումները, ինչպե՞ս բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը։

Ահա հենց այս հարցերին էր նվիրված ֆաբրիկայի դիրեկտոր, ագիտատոր Սերգեյ Աբելյանի հերթական ագիտացիոն զրույցը։

Սկսելով զրույցը, նա մանրամասնորեն բացատրեց աշխատանքի առաջավոր մեթոդների, արտադրության նորարարների փորձի ուսումնասիրման և դրանք ֆաբրիկայում արմատավորելու մասին։

— Աշխատանքի առաջավոր փորձի ուսումնասիրումը, նրա տարածումն ու արմատավորումը,— ասում է ագիտատորը,— եղել ու մնում է աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու կարևոր միջոց։ Նորն ու առաջավորը մեզ մոտ արմատավորվեց և առաջին մեծ արդյունքը տվեց այն բանից հետո, երբ մեր ֆաբրիկայի մի խումբ բանվորներ ու ինժեներներ եղան Ռոստովի և Լենինգրադի կոշիկի գործարաններում, ուսումնասիրեցին նրանց աշխատանքի փորձը։ Ագիտատորը պատմում է այդ փորձի մասին, հանգամանորեն բացատրում, թե ո՞րն էր այն նորը, որն արմատավորվել է իրենց մոտ և տվել մեծ արդյունքներ։ Ունկնդիրների մեջ առանձնա-



պես մեծ հետաքրքրություն առաջացրեց այն փաստը, որ լենինգրադցիները կաղապարի վրա կոշիկի երեսի վրաքաշի պրոցես չեն կատարում։ Այո, զարմանալի է, բայց այստեղ որևէ գաղտնիք չկա,— ասում է ագիտատորը։ Ապա նա ունկնդիրներին ցույց է տալիս կոշիկի երկու կաղապար։ Դրանք առաջին հայացքից իրարից ոչնչով չեն տարբերվում, բայց ահա նրանցից մեկը հետևի մասում ունի հատուկ հարմարանք, որի շնորհիվ կաղապարը կարող է սեղմվել և ընդարձակվել։ Այդ կաղապարի օգտագործման շնորհիվ հնարավորություն է ստեղծվում կոշիկի եզրակարը կատարել անմիջապես մեքենայի վրա, առանց վրաքաշի։ Ագիտատորը պատմում է նաև ուրիշ առաջավոր մեթոդների մասին, որոնց կիրառումը տվել է հումքի և օժանդակ նյութերի մեծ տնտեսում, վերացրել է ձեռքի դժվար աշխատանքը և արագացրել առանձին պրոցեսներ։

Այսպիսով,— ասում է ագիտատորը,— մեզ մոտ կիրառվեց աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու պայմաններից մեկը, բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը։

Սակայն մեքենայի լրիվ բեռնվածությունն

ու արտադրական կարողությունը օգտագործելու նոր մեթոդները չեն միայն, որ Կիրովականի կոշկագործները արմատավորել են իրենց ֆաբրիկայում։ Մեծ նշանակություն է ունեցել նաև արտադրության կուլտուրայի բարձրացումը, ցեխերի ու աշխատամասերի սանիտարական վիճակի բարելավումը։

— Այն բանից հետո, երբ մեր հիմնական ցեխում տեղադրեցինք օդափոխիչներ և անցկացրինք ցերեկային էլեկտրական լուսավորում,— շարունակում է ագիտատորը, սանիտարական վիճակը բարելավվեց։ Միայն ացետոն գազի վնասակարությունը չեզոքացնելու շնորհիվ, մեզ մոտ 8—10 տոկոսով բարձրացավ յուրաքանչյուր աշխատողին ընկնող արտադրանքի քանակը։

Այնուհետև ագիտատորն անցնում է աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու մյուս գործոնին՝ կադրերի հետ տարվող աշխատանքի հարցին։

Ձեռնարկության յուրաքանչյուր աշխատողին ընկնող արտադրանքի քանակի ավելացումը,— ասում է նա,— մեծապես կախված է նաև կադրերի ճիշտ տեղաբաշխումից, ավելորդ հաստիքների ու գերածախսի աղբյուրների վերացումից։ Հասկանալի է,



թե ինչու պարտիան ու կառավարությունը այնքան մեծ ուշադրություն են նվիրում կադրերի ճիշտ տեղաբաշխման և ավելորդ հաստիքների կրճատման հարցին։ Իսկ ինչպե՞ս է տարվել այդ աշխատանքը մեզ մոտ։

— Կադրերի վերադասավորումը մեր ֆաբրիկայում սկսվեց այն բանից, որ կրճատվեցին ինչպես վարչական ապարատի աշխատողների, այնպես էլ օժանդակ բանվորների թիվը։ Կրճատվածները աշխատանքի անցան բուն արտադրության մեջ։ Դրա շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 18 տոկոսով։ Ճիշտ է, այս կրճատումը սկզբնական շրջանում տեղիք տվեց որոշ դժգոհությունների, բայց երբ մարդիկ ըմբռնեցին նրա տնտեսական նշանակությունը, և համոզվեցին դրա առավելությունների մեջ, փոխեցին իրենց վերաբերմունքը։ Բանվորներից մեկը, որը մի ժամանակ բողոքում էր, թե գրչին ընտելացած իր ձեռքը կաշվի հետ «լեզու գտնել չի կարող», այժմ ասում է. «շնորհակալ եմ նախ այն բանի համար, որ մասնագիտություն սովորեցի, շնորհակալ եմ և նրա համար, որ աշխատավարձս երկու անգամ ավելացավ»։

Կադրերի ճիշտ տեղաբաշխումը մեծ նշա-

նակություն ունի նաև բուն արտադրության պրոցեսում։ Այս տեսակետից բնորոշ է հետևյալ օրինակը։ Երբ շտամպող մեքենայի վրա աշխատող Լիդա Սարգսյանը տեղափոխվեց այլ օպերացիայի վրա, իսկ նրա փոխարեն սկսեց աշխատել Մկրտիչ Ալեքսանյանը, աշխատանքի արդյունքը մեծացավ։ Ալեքսանյանը լինելով ֆիզիկապես ուժեղ, ավելի հեշտությամբ է կառավարում բարդ մեքենան, իսկ Լիդան իր եռանդի ու ջանասիրության շնորհիվ ավելի լավ արդյունքի հասավ կոշիկի երես կարող մեքենայի վրա։

Վերջին հարցը, որի վրա ագիտատորը հրավիրեց ունկնդիրների ուշադրությունը, դա արտադրության մեքենայացման հարցն էր։

— Ահա մեր ֆաբրիկայի կողմից մեկ տարի առաջ և վերջերս արտադրված կոշկեղենի երկու նմուշ։ Սրանցից ո՞րը կնախընտրեիք ունենալ,— հարցնում է ագիտատորը։

— Իհարկե այն, որն ունի գեղեցիկ եզրակար և կաուչուկե ներբաններ,— պատասխանում են ունկնդիրները։ Բայց որքան մեծ եղավ նրանց զարմանքը, երբ իմացան, որ հենց այդ վերջին զույգը, որն



աչքի է ընկնում իր գեղեցկությամբ, ամրությամբ ու դիմացկունությամբ, ավելի էժան է քան մյուսը։

— Զարմանալու ոչինչ չկա,— ասում է ագիտատորը,— ձեր հավանած զույգը ավելի էժան է, որովհետև նրա վրա ավելի քիչ աշխատանք և աշխատաժամանակ է ծախսվել, իսկ քիչ աշխատանքով ավելի շատ և բարձր որակով արտադրանք թողարկելուն նպաստել է տեխնիկական պրոգրեսը։

Ագիտատորը կենդանի օրինակների հիման վրա ցույց տվեց, որ տեխնիկական պրոգրեսը աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու հիմքը և հիմնական աղբյուրն է։

— Մեր ֆաբրիկայում,— ասում է նա,— հին մեքենաների կողքին կան հայրենական արտադրության նոր մեքենաներ ու սարքավորումներ, որոնք՝ նախկինների նկատմամբ մեծ առավելություններ ունեն։ Նորագույն տեխնիկայի կիրառման շնորհիվ վերացել են ձեռքի մի շարք աշխատանքներ։ Այսպես, օրինակ, կոշիկի եզրակարը առաջ կատարվում էր ձեռքով, այժմ այդ աշխատանքը կատարվում է «Պուլեր» սիստեմի մեքենայով։ Մեկ «Պուլերը», փոխա-







րինում է տասնյակ մարդկանց ձեռքի աշխատանքին, կոշիկի եզրին կպցնում է «ռանտ» կոչվող այնպիսի ժապավեն, որը գեղեցկության հետ միասին արտադրանքին տալիս է նաև ամրություն։

Սակայն միայն «Պուպել» մեքենայով չէ որ հագեցվել է Կիրովականի կոշիկի ֆաբրիկան։ Վերջին մեկ—երկու տարում այստեղ տեղադրվել են 8 նոր մեքենաներ, այդ թվում՝ եզրակարող, դրոշմող և կոշիկների երեսներ կարող մեքենաներ և այլն։

Իր զրույցի վերջում ագիտատորը կոնկրետ օրինակներով ցույց տվեց, որ աշխատանքի արտադրողականության մակարդակը կախված է նաև տեխնիկական նորմավորումից, աշխատանքի կազմակերպումից, սոցիալիստական մրցության թափից, բանվորների նյութական շահագրգռվածության ամրապնդումից, նրանց ստեղծագործական ակտիվության բարձրացումից։

Ագիտատորի զրույցը աշխույժ էր, կենդանի և հետաքրքիր։

---

## ԱԳԻՏԱՏՈՐ Կ. ԽՈՋՈՅԱՆԻ ԶՐՈՒՅՑԸ ԾԽԱԽՈՏԱԳՈՐԾՆԵՐԻ ՀԵՏ

Առաջավորների աշխատանքի փորձի մասին ծխախոտագործների հետ հաճախակի զրույց է ունենում Իջևանի շրջանի Խաշթառակ գյուղի Ստալինի անվան կոլտնտեսության ագիտատոր Կ. Խոջոյանը։ Վերջերս նա կոլտնտեսականների հետ հենց այդ թեմայի շուրջ զրույց ունեցավ։ Զրույցի սկզբում ագիտատորը համառոտակի պատմեց իրենց կոլտնտեսության հաջողությունների մասին, իսկ հետո պարզաբանեց առաջավոր ծխախոտագործներ Շուշիկ Գուլակյանի և Շամամ Ոսկանյանի աշխատանքի փորձը։

— Մեր կոլտնտեսությունում,— ասաց ագիտատորը,— ծխախոտը ամենաեկամտաբեր և առաջատար կուլտուրաներից է։ Այդ է պատճառը, որ մեզ մոտ առանձնահատուկ ուշադրություն է դարձվում այդ կուլտուրայի բերքատվության բարձրացման վրա։ Եթե 1956 թվականին 80 հեկտար ծխախոտի ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 12 ցենտներ միջին բերք, ապա

անցյալ գյուղատնտեսական տարում այն հասավ 17,2 ցենտների։

Ծխախոտի բերքատվության բարձրացման շնորհիվ զգալիորեն աճել է կոլտնտեսության դրամական եկամուտը։ Օրինակ, 1956 թվականին ծխախոտից ստացված եկամուտը կազմում էր 996 հազար 246 ռուբլի, իսկ 1957 թվականին 1 միլիոն 457 հազար ռուբլի։

Ծխախոտի բարձր եկամտաբերության մասին խոսելուց հետո, ագիտատորը ունկընդիրներին մանրամասնորեն ծանոթացնում է առաջավոր ծխախոտագործների աշխատանքի փորձի հետ։

— Չնայած մեր կոլտնտեսության լուրջ հաջողություններին, որ նա ձեռք է բերել բերքատվության բարձրացման գործում,— ասում է ագիտատորը,— մենք չենք կարող հանգստանալ, որովհետև կոլտնտեսությունում առանձին բրիգադների և օղակների ձեռք բերած բարձր ցուցանիշները խոսում են այն մասին, որ մեր բոլոր ծխախոտագործները ընդօրինակելով առաջավորներին, կարող են հասնել առավել բարձր բերքատվության։ Օրինակ, Շուշիկ Գուլակյանի օղակը այս տարի 5 հեկտար ծխախոտի ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից 22 ցենտներ միջին բերք ստացավ,



գերակատարելով բերքատվության նախատեսված պլանը 7 ու կես ցենտներով, իսկ Ծամամ Ոսկանյանի օղակը ամեն մի հեկտարից ստացավ 20,3 ցենտներ ծխախոտի միջին բերք։

Այնուհետև ագիտատորը ունկնդիրներին պատմում է ծխախոտի ցանքերը մշակելու ագրոտեխնիկան ճիշտ կիրառելու վերաբերյալ նշված առաջավոր օղակների գործնական աշխատանքի մասին։ Ծխախոտի ամբողջ մշակության ընթացքում,— ասում է ագիտատորը,— հետևել եմ Շ. Գուլակյանի և Ծ. Ոսկանյանի կատարած աշխատանքին և ուսումնասիրել նրանց աշխատանքի փորձը։ Այդ առաջավոր օղակավարուհիները հատուկ ուշադրություն էին դարձնում ծխախոտի նախացանքային մշակության վրա։ Դեռ աշնանը նրանք ծխախոտի պլանտացիաների ամեն մի հեկտարի համար դաշտ տեղափոխեցին 25—30 տոննա գոմաղբ և որպեսզի հողում անհրաժեշտ խոնավություն պահպանվի, ձմռան ընթացքում նրանք այդ հողամասերում փոցխում կատարեցին, իսկ վաղ գարնանը այն պարարտացրին հանքային պարարտանյութերով՝ յուրաքանչյուր հեկտարին տալով 2—3 ցենտներ սուպերֆոսֆատ և մեկ ցենտներ կալիական պարարտանյութ։

Բարձր բերքի վարպետներ Շ. Գուլակյանը և Շ. Ոսկանյանը,— շարունակում է ագիտատորը,— բերքատվության բարձրացման ամենակարևոր նախապայմանը համարում են ծխախոտի սածիլանոցային տնտեսության ճիշտ կազմակերպումը: Օգտագործելով Իջևանի շրջանի կլիմայական բարենպաստ պայմանները, նրանք անցյալ տարի սածիլանոցում ցանքը կատարեցին համեմատաբար ավելի շուտ՝ փետրվարի 15-ից: Առողջ սածիլներ ստանալու համար, նրանք կիրառեցին ագրոտեխնիկական բոլոր միջոցառումները: Ժամանակին սնուցում տվեցին, ջերմոցում ճշտորեն պահպանեցին օդաջերմային ռեժիմը, ուժեղ պայքար մղեցին նկատված հիվանդությունների դեմ և այլն: Խելացի ու մտածված աշխատանքի շնորհիվ նախորդ տարիների համեմատությամբ ավելի առողջ ու փարթամ սածիլներ ստացվեց: Այնուհետև օղակների անդամները սածիլները խնամքով դաշտ տեղափոխեցին: Սածիլացումը կատարվեց 25 սմ. միջբնային և 70 սմ. միջշարային տարածության վրա: Յուրաքանչյուր հեկտարի վրա տնկվեց 65—70 հազար առողջ սածիլ:

Ծխախոտը այնպիսի տեխնիկական կուլտուրա է,— շարունակում է ագիտատոր Կ.



Խոջոյանը,— որն իր աճման շրջանում շատ հոգատար խնամք է պահանջում: Այդ նկատի ունենալով առաջավոր օղակավարուհիները իրենց օղակների բոլոր անդամների հետ միասին ժրաջան կերպով ձեռնամուխ եղան ծխախոտի մշակությանը: Նրանք ազոտական պարարտանյութով ցանքերին 2 անգամ սնուցում տվեցին, ամեն անգամ յուրաքանչյուր հեկտարի տրվեց մեկ ցենտներ ամոնիում սուլֆատ, որից հետո ծխախոտի նույն տարածությունները կրկին սնուցում ստացան փտած գոմաղբով, ցանքերին ջուր տրվեց ըստ պահանջի: Ծխախոտի պլանտացիաներում ժամանակին կատարվում էր փխրեցում և քաղհան: Ագրոտեխնիկական ճիշտ ժամկետներում կատարվեցին նաև ծաղկատման և տերևաքաղի աշխատանքները: Առանձնակի ուշադրություն դարձվեց քաղված տերևները շարելու և այն չորացնելու վրա:

Սկսվել են գարնան գյուղատնտեսական աշխատանքները: Առաջավոր այդ օղակները ջանք չեն խնայում անցյալ տարվա ընթացքում ձեռք բերված հաջողությունները ամրապնդելու և ընթացիկ տարում ամեն մի հեկտարից 25 ցենտներ ծխախոտի բերք ստանալու համար:

Ա. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ

# ԲԱՄԲԱԿԵՆՈՒ ՄՇԱԿՈՒԹՅՈՒՆԸ ՄԵՐ ԲՐԻԳԱԴԱՅՈՒՄ

Տրակտորային բրիգադի բրիգադիր
Վ. ՀԱԿՈԲՅԱՆԻ պատմածը

Մեր ռեսպուբլիկայի բամբակացան շրջանների համար 1957 թվականը անբարենպաստ տարի էր։ Բայց, չնայած դրան, Էջմիածնի շրջանի Արբաթ և Արևաշատ գյուղերի կոլտնտեսությունները, որոնց սպասարկում է մեր տրակտորային բրիգադան, բամբակի բարձր բերք ստացան։ Արբաթ գյուղի կոլտնտեսությունը յուրաքանչյուր հեկտարից ստացավ 24 ցենտներ բամբակ, պլանով նախատեսված 21,1 ցենտների փոխարեն, իսկ Արևաշատ գյուղի կոլտնտեսությունը՝ 25,5 ցենտներ։

Բարձր բերքի համար, կոլտնտեսականների հետ ձեռք-ձեռքի տված, անձնվիրաբար աշխատեցին նաև մեր բրիգադայի մեխանիզատորները։ Ես ուզում եմ պատմել բամբակենու մեքենայական մշակության մեր փորձի մասին։



Հանրահայտ է, որ բամբակի բարձր բերք կարելի է աճեցնել միայն այն դեպքում, եթե լրիվ և ժամանակին կիրառվեն նրա մշակության ագրոտեխնիկական բոլոր միջոցառումները։ Իսկ ագրոկանոնների գլխավոր կիրառողը մեխանիզատորն է, քանի որ բամբակենու մշակության աշխատանքների մեծագույն մասը մեքենայացված է։ Բավական է ասել, որ վարն սկսելուց մինչև բերքահավաքը մեխանիզատորն, այս կամ այն աշխատանքը կատարելու համար, իր մեքենայով բամբակենու դաշտն է մտնում 15—17 անգամ։

Նախ հողի մշակության մասին։ Սովորաբար աշնանը ցրտահերկ ենք կատարում, որը բամբակի բարձր բերքի կարևոր նախադրյալներից մեկն է։ Ցրտահերկի ժամանակ հողին անպայման պարարտանյութ ենք տալիս։

Գարնանը կատարում ենք չիզել, փոցխում և տափանում։ Արդեն մի քանի տարի է, ինչ հողի մշակության այդ երեք աշխատանքները մենք կատարում ենք միաժամանակ, և ահա թե ինչպես։ ԴՏ—54 տրակտորի հետ ագրեգատավորում ենք խորը փխրեցման կուլտիվատորը (չիզել), նրան կցում փոցխը և վերջինիս էլ տափանը։ Ուրեմն, տրակտորը, երեք անգամ դաշտ մտնելու փոխարեն, մտ-

նում է մեկ անգամ։ Այսպիսով, տրակտորի քարշային ուժը օգտագործվում է ոչ թե 60 տոկոսով, ինչպես շիգել կատարելիս, այլ 80 տոկոսով, զգալիորեն տնտեսվում է վառելանյութը, հողի այդ երեք մշակությունների ժամկետները կրճատվում են 8—10 օրով (հետևապես շուտ կսկսվի նաև ցանքը) իջնում է մեկ հեկտարի վրա կատարված մեքենայական աշխատանքների ինքնարժեքը։

Բարձր բերքի մյուս կարևոր նախապայմանը ժամանակին ու որակով ցանք կատարելն է։ Բամբակենու ցանքը մենք կատարում ենք 7 օրում։ Հիմնականում ցանում ենք 60 սանտիմետր միջշարքային տարածությամբ, իսկ անցյալ տարի 12 հեկտարի վրա կատարեցինք նաև քառակուսի-բնային ցանք՝ 50×50 սխեմայով։ Այդ սխեմայով կատարված ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացվեց մեկ ցենտներով ավելի բերք, քան 60 սմ. միջշարքային տարածությամբ կատարված ցանքից։

Ցանքի հաջողությունը մեծ չափով կախված է շարքացանների կարգավորումից, որը մենք կատարում ենք խնամքով։ Շարքացանները կարգավորում ենք կոլտնտեսության գյուղատնտեսի, տրակտորիստի հետ միասին։

Նախ կարգավորում ենք սերմ գցող ապա-



րատներն այն հաշվով, որ յուրաքանչյուր հեկտարի վրա ապահովվի 80 կգ. սերմի ցանումը։ Այնուհետև կարգավորում ենք սերմն անհրաժեշտ՝ 2—3 սմ. խորության վրա հողի մեջ գցելը։

Առանձնապես մեծ ջանքեր և փորձառություն է պահանջվում ցանող ագրեգատին ճիշտ ուղղություն տալը՝ առաջին գծի ուղղությունը որոշելը, քանի որ դրանից է կախված ուղիղ շարքեր ստանալը, առանց որոնց անհնարին է բամբակենու մեքենայական մշակությունը։ Ցանող ագրեգատի ընթացքի առաջին գիծը որոշելու համար մենք դաշտի եզրից հաշվում ենք 2 մ. 40 սմ (եթե միջշարքային տարածությունը 60 սմ. է) և ապա կանգնեցնում նշանաձողեր։ Քանի որ մեր ցանք կատարող տրակտորիստները շատ հմուտ են, ապա այդ նշանաձողերի ուղղությամբ ագրեգատը վարելով ստանում ենք այնպիսի առաջին գիծ, որ կարծես քանոնով գծված լինի։ Այնուհետև արդեն հեշտ է։ Նշանաձողերը հանում ենք և տրակտորիստն ագրեգատն սկսում է վարել մարկյորի հետագծով։

Շարքացանի այսպիսի կարգավորումից և փորձարկումից հետո կարելի է վստահ լինել, որ ցանքը բարձրորակ կլինի։ Բայց այդ

չի նշանակում, որ այլևս կարիք չկա հսկելու տրակտորիստի աշխատանքին։ Ցանքի ամբողջ ընթացքում կատարված աշխատանքի որակը ամեն օր ստուգում ենք։

Այժմ մշակության մասին։ Մենք բամբակենու առաջին մշակությունն սկսում ենք, երբ ամբողջ ցանքը լրիվ ծլած է լինում և դաշտը կուլտիվացիայի կարիք է զգում։ Եթե դաշտը շատ է աղտոտված մոլախոտերով, ապա կուլտիվատորներին ամրացնում ենք դանակներ, այն հաշվով, որ նրանք մոլախոտերի արմատները կտրեն 3—4 սմ. խորության վրա, ոչ ավելի, քանի որ այդ ժամանակ բամբակի բույսը դեռևս խոր արմատներ գցած չի լինում և եթե դանակներն ավելի խոր թաղվեն հողի մեջ, ապա վերջինիս մակերեսը կարող է տեղաշարժվել, որից և կտուժեն բամբակի մատաղ բույսերը։

Առաջին մշակությունը կատարելիս մեր տրակտորիստները, որպես կանոն, ագրեգատը վարում են միայն առաջին արագությամբ, երկրորդ արագությունը մեզ մոտ վաղուց վերացված է, քանի որ այդ արագությամբ ընթացող տրակտորի ծանրության ներքո հողի մակերեսի տեղաշարժ տեղի կունենան։

Երկրորդ և հետևյալ մշակությունների ժա-



մանակ տրակտորիստներն իրենց մեքենաները վարում են արդեն երկրորդ արագությամբ, որն այս դեպքում ամենից ձեռնտու է։ Եթե նախկինում, փափուկ վարի հեկտարներ «շահելու» ետևից ընկած տրակտորիստները ամեն կերպ ձգտում էին մեքենաները քշել երրորդ արագությամբ, ապա այժմ ոչ մի մեխանիզատոր իրեն այդ բանը թույլ չի տա։

Իսկ եթե առաջին մշակությունն սկսելիս բամբակենու դաշտը մոլախոտերով շատ վարակված չի լինում, ապա դանակների փոխարեն մենք կուլտիվատորին ամրացնում ենք փխրեցման լայն թաթիկներ, որպեսզի հողում եղած գերխոնավությունը շուտ դուրս գա և բամբակենին արագ աճի։

Երկրորդ մշակությունը կատարելուց հետո, բույսերին տալիս ենք առաջին սնուցումը։ Սնուցիչ մեքենան այնպես ենք կարգավորում, որ սնուցումը բույսին տրվի երկու կողմից, նրանից 10 սմ. հեռավորության վրա, 8—10 սմ. խորությամբ։ Մեկ հեկտարին անհրաժեշտ քանակությամբ պարարտանյութ տալու համար, տրակտորիստը ագրեգատը վարում է միայն երկրորդ արագությամբ։

Երրորդ մշակությունը կատարելու համար,

կուլտիվատորին ամրացնում ենք փխրեցման լայն թաթիկներ, փխրեցման խորությունը պահպանում ենք 14—15 սմ. խորության վրա։

Եվ, վերջապես, բամբակի բարձր բերք աճեցնելու համար վճռական նախապայման է հանդիսանում բույսերը հիվանդություններից ու վնասատուներից զերծ պահելը, բուժումը։ Այս գործում արդեն ամբողջ պատասխանատվությունն ընկնում է մեխանիզատորների վրա։ Բամբակենու հիվանդությունների ու վնասատուների դեմ մենք ունենք այնքան հզոր միջոցներ, որ բուժումը ժամանակին և բարձրորակ կատարելու դեպքում բերքի ոչ մի կորուստ չի լինի։

Մենք սրսկիչ մեքենաները մշտապես պահում ենք սարքին ու պատրաստի վիճակում և մասնագետների ու կոլտնտեսության ղեկավարների առաջին իսկ պահանջով սկսում ենք բույսերի բուժումը։ Բուժումը բույսերին տալիս ենք ներքևից։ Տրակտորիստը մեքենան վարում է միայն երկրորդ արագությամբ, քանի որ այդ արագության դեպքում միայն հնարավոր է մեկ հեկտարին 1.200 լիտր բուժանյութ տալ։ Եթե մեքենան ընթանա երրորդ արագությամբ, ապա հեկտարին տրվող բուժանյութի քանակը համարյա թե



կիսով չափ պակասում է և բուժումը էֆեկտավոր չի լինում։

Անցյալ տարի բամբակենու վնասատուների, հատկապես «չոռ»-ի ուժեղ բռնկումներ եղան, բայց, չնայած դրան, բամբակի բերքի կորուստ տեղի չունեցավ, քանի որ բուժումը կատարեցինք ժամանակին և բարձր որակով։

Մենք, մեխանիզատորներս ջերմորեն ընդունեցինք «Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու մասին» ՍՄԿՊ Կենտկոմի որոշումը և այդ կապակցությամբ ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսները։

Ինչ խոսք, որ Պարտիայի այդ նոր միջոցառումը է՛լ ավելի կամրապնդի մեր կոլտնտեսությունները տնտեսապես և կազմակերպչորեն։ Հիմնովին կփոխվի մեխանիզատորների վերաբերմունքը կոլտնտեսային շահերի նկատմամբ։ Եթե մինչև այժմ տրակտորիստները ձգտել են որքան կարելի է գերակատարել պլանը փափուկ վարի հաշվով, այժմ նրանք հատուկ ուշադրություն կդարձնեն աշխատանքի որակի վրա։

Այժմ տրակտորային մեր բրիգադն կազմ ու պատրաստ սպասում է գարնան գյուղատնտեսական աշխատանքներին։

Լ. ՂԱՐԻԲՅԱՆ

# ՄԻԱՑՅԱԼ ԱՐԱԲԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՍՏԵՂԾՈՒՄԸ

Երևանի 26 կոմիսարների անվան շրջանի «Հայրենիք» արտելի ագիտատոր Լ. Ջինանյանը խնդրել է տպագրել հոդված Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի ստեղծման մասին: Պատասխանում ենք ագիտատորի հարցին:

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, որը մարդկության պատմության նոր դարագլխի սկիզբը դրեց, ամենածանր հարվածը հասցրեց իմպերիալիզմի գաղութային սիստեմին։ Ամենուրեք ծավալվեցին ազգային-ազատագրական շարժումներ գաղութային լծից ազատագրվելու համար։ Այդ նույն ժամանակաշրջանում, մանավանդ 1919—20 թվականներին, ազգային-ազատագրական շարժումներ ծավալվեցին նաև Արաբական Արևելքի երկրներում։ Եգիպտական ժողովրդի զինված պայքարի շնորհիվ 1920 թվականի փետրվարին Անգլիան վերացրեց իր պրոտեկտորատը Ե-*



*գիպտոսի նկատմամբ։ Սակայն այդ նույն Անգլիան 1936 թվականին Եգիպտոսի վզին փաթաթեց «դաշնակցային» ռազմական պայմանագիրը և սկսեց օգտագործել նրա մի շարք քաղաքները որպես ռազմական բազաներ։*

*Եգիպտական ժողովրդի համառ պայքարը շարունակվեց։ 1951 թվականին չեղյալ հայտարարվեց Անգլիայի հետ կնքված ռազմական պայմանագիրը։ 1952 թվականի հուլիսի 23-ին տապալվեց միապետական ռեժիմը, իսկ 1953 թվականին երկիրը հռչակվեց ռեսպուբլիկա։*

*Եգիպտական ժողովրդի շատ տասնամյակների ընթացքում մղված համառ, անձնուրաց պայքարը պսակվեց նոր հաղթանակով, երբ 1956 թվականի հուլիսի 26-ին ազգայնացվեց Սուեզի ջրանցքի օտարերկրյա ընկերությունը։ Հենց այդ առիթը օգտագործելով, 1956 թվականի հոկտեմբերի վերջերին անգլո-ֆրանս-իսրայելյան գաղութարարները կազմակերպված ու ավազակային հարձակում գործեցին Եգիպտոսի վրա, որը ավարտվեց նրանց խայտառակ պարտությամբ։*



Եգիպտոսը ունի 994 հազար քառակուսի կիլոմետր տարածություն և ավելի քան 24 միլիոն բնակչություն, որի 75 տոկոսը ապրում է գյուղական վայրերում։ Եգիպտոսում ապրում են նաև հույներ, հայեր, հրեաներ, անգլիացիներ, ֆրանսիացիներ։ Երկրի մայրաքաղաքն է Կահիրեն, որն ունի 3 միլիոն բնակիչ։ Կահիրեն իրավամբ համարվում է արաբական կուլտուրայի կենտրոն։

Եգիպտոսն ունի թույլ զարգացած արդյունաբերություն։ Գաղութարարները երկար տարիներ այն դարձրել էին իրենց և հատկապես Անգլիայի ագրարային-հումքային կցորդը, ապրանքների իրացման և կապիտալի ներդրման շուկա։

Ռեսպուբլիկայի հռչակումից հետո (1953 թ.) կառավարությունը մի շարք միջոցառումներ մշակեց երկրում արդյունաբերության զարգացման համար։ Այժմ արագորեն զարգանում է մեքենաշինությունը, էլեկտրա-արդյունաբերությունը։ Շարունակվում է Ասուանի հզոր ամբարտակի կառուցման աշխատանքները։ Սկսվել են կանոնավոր կերպով օգտագործվել երկրի հան-



քային հարստությունները՝ նավթի, երկաթի, մարգանեցի, ֆոսֆորիտների հանքերը։

1955 թվականին առաջին անգամ Եգիպտոսի պատմության մեջ կատարվեց հողային ռեֆորմ, ըստ որի հողազուրկ գյուղացիության որոշ մասը ապահովվեց հողով։

Այժմ Սիրիայի մասին։ Սիրիական ժողովուրդը բազմադարյան պատմություն ունի։ Սիրիան 1516 թվականին նվաճեցին թուրք-օսմանները, այն դարձնելով իրենց վիլայեթներից մեկը։ Մոտ 400 տարի, մինչև 1918 թվականը, թուրք նվաճողները ծծում էին սիրիական ժողովրդի արյունը։

Թուրք նվաճողներին փոխարինեցին ֆրանսիական գաղութարարները։ Սիրիական ժողովուրդը տասնյակ տարիներ համառ պայքար է մղել օտար նվաճողների դեմ։ 1941 թվականի հունիս-սեպտեմբերին ժողովրդական մասսաների ճնշման տակ Սիրիան անկախ երկիր հայտարարվեց, բայց դա ձևական անկախություն էր, որովհետև այնտեղ մուտք գործեցին, բացի ֆրանսիական զորքերից նաև անգլիական զորքերը։

Սիրիական ժողովրդի պայքարի և Սովետական Միության բարոյական օգնության շնորհիվ 1946 թվականի ապրիլի 17-ին Սիրիայում ստեղծվեց անկախ պետություն, դա

Արաբական Արևելքում առաջին անկախ պետությունն էր։

1954 թվականի փետրվարին, ամերիկայի գործակալ Ադիբ Շիշեքլու կառավարության անկումից հետո, երկրում տեղի ունեցան ընտրություններ, որին մասնակցություն ունեցավ նաև Սիրիայի կոմունիստական պարտիան։

Պրեզիդենտ ընտրվեց Շուքրի Քուաթլին, պրեմիեր մինիստր Սաբրի Ասալին։ Նոր կառավարության չեզոք և ինքնուրույն քաղաքականությունը դուր չեկավ ամերիկյան ու թուրքական կառավարողներին, որոնք սկսեցին դավադրություններ կազմակերպել Սիրիայի դեմ։ Սովետական Միության, ՉԺՌ-ի և Արաբական Արևելքի մյուս երկրների բարոյական օգնության շնորհիվ ձախողվեցին նրանց ագրեսիվ պլանները։

Սիրիան ունի 181 հազար քառակուսի կիլոմետր տարածություն, 4 միլիոնից ավելի բնակչություն։ Սիրիայում բնակվում են մոտ 300 հազար քրդեր, 100 հազար հայեր, ասորիներ, թուրքմեններ, չերքեզներ և այլն։

Պետական կարգը բուրժուական ռեսպուբլիկա է, մայրաքաղաքն է Դամասկոսը։ Հանքային հարստություններից հայտնի են՝ աղը ,երկաթը, մարգանեցը։ Սիրիան վեր-



ջին տարիներս մեծ հաջողություններ է ձեռք բերել արդյունաբերության բնագավառում։

***

«Երբ Սիրիան իր լիակատար անկախությունը ձեռք բերեց,— օրերս ասաց Գամալ Աբդել Նասերը,— նա հայացքը հառեց Եգիպտոսին։

Այդ կերպ վարվեց և Եգիպտոսը։ Լիակատար անկախություն ձեռք բերելով, նա իր հայացքը հառեց Սիրիային»։ Այդ երկու արաբական երկրների բարեկամական հարաբերությունները սկսվեց նրանից, որ 1955 թվականի հոկտեմբերի 20-ին ստորագրվեց Սիրա-Եգիպտական պաշտպանական-ռազմական պայմանագիրը, իսկ նույն թվականի նոյեմբերին ստեղծվեց միասնական ռազմական հրամանատարություն։

Երբ 1956 թվականի հոկտեմբերի վերջերին անգլո-ֆրանս-իսրայելյան ագրեսորները պատերազմ սկսեցին Եգիպտոսի դեմ, սիրիական ժողովուրդը առաջինը հանդես եկավ ի պաշտպանություն եգիպտական ժողովրդի։ Այս առթիվ Սիրիայի պրեմիեր-մինիստր Սաբրի Ասալին ասաց.

«Սիրիան իր բոլոր զինված ուժերը, իր բո-

լոր միջոցները կտրամադրի Սիրիա-եգիպտական միասնական հրամանատարության տրամադրության տակ, կատարելով մեր պարտքը մեր դաշնակցի նկատմամբ»:

Իսկ պրեզիդենտ Շուքրի Քուաթլին հայտարարեց. «Ագրեսիա Եգիպտոսի դեմ, նշանակում է ագրեսիա Սիրիայի դեմ»:

Անցավ մեկ տարի: 1957 թվականի աշնանը, երբ թուրքական զորքերը կենտրոնացվել էին Սիրիայի սահմանի ամբողջ երկայնքով, երբ սպառնալիք էր կախվել Սիրիայի վրա, Եգիպտոսը իր զորամասերը ուղարկեց Սիրիային պաշտպանելու համար:

1957 թվականի սեպտեմբերին կազմակերպվեց Սիրիա-Եգիպտական տնտեսական միությունը, առաջ քաշվեց այս երկու երկրների ֆեդերացիա ստեղծելու գաղափարը, որը ջերմորեն պաշտպանվեց ամբողջ արաբական ժողովրդի կողմից:

«Ալ-Ախբար» թերթը գրում է. «Ֆեդերացիայի ստեղծելը դա շրջադարձային կետ է ոչ միայն Եգիպտոսի և Սիրիայի պատմության մեջ, այլ այն կլինի «սիմվոլ» արաբներին ազատագրելու համար»:

Գնալով աճում է այս երկրների տնտեսական ռազմական միասնությունը:

1957 թվականի նոյեմբերի 18-ին Դա-



մասկոսում տեղի ունեցավ սիրիական պառլամենտի հանդիսավոր նիստ, որտեղ ներկա էին եգիպտական պառլամենտի 42 դեպուտատներ: Երկու երկրների պառլամենտների դեպուտատները միահամուռ կերպով հանդես եկան հօգուտ Սիրիա-Եգիպտական ֆեդերացիայի ստեղծման:

Խոսելով արաբների միասնության և իմպերիալիզմի դեմ նրանց պայքարի նշանակության մասին, Եգիպտոսի ազգային ժողովի նախագահի տեղակալ Անվար Սադատն ասաց.

«Մենք ուզում ենք միասնություն ստեղծել, մեր երկրները միավորելով ոչ նրա համար, որպեսզի ագրեսիայի ենթարկենք որևէ երկիր, այլ նրա համար, որ պաշտպանենք ազատությունը և արաբների իդեալները»:

Սիրիա-Եգիպտական ֆեդերացիայի ստեղծումը մեծ սիրով ընդունվեց արաբական երկրների կողմից: 1958 թվականի հունվարի վերջերին, Կահիրեի Կուբեի պալատում տեղի ունեցած պատմական նիստում Սիրիայի պրեզիդենտ Շուքրի Քուաթլին և Եգիպտոսի պրեզիդենտ Գամալ Աբդել Նասերը քննարկեցին Եգիպտոսի Ազգային ժողովի և Սիրիայի ներկայացուցիչների պալատի կողմից միահամուռ կերպով ընդուն-

ված այն որոշումները, որ երկու երկրները միավորվեն՝ որպես արաբական լիակատար միասնության նախնական քայլ։

Նիստի մասնակիցները հայտնեցին իրենց լիակատար համաձայնությունը, վստահությունը և խոր հավատը Եգիպտոսն ու Սիրիան մի պետության մեջ միավորելու, Միացյալ Արաբական Ռեսպուբլիկա ստեղծելու մասին։ 1958 թվականի փետրվարի 5-ին երկու երկրների պառլամենտները միահամուռ կերպով հաստատեցին այդ որոշումը։ Փետրվարի 21-ին, ինչպես Սիրիայում, այնպես էլ Եգիպտոսում տեղի ունեցավ հանրաքվե Միացյալ Արաբական Ռեսպուբլիկա ստեղծելու և Գամալ Աբդել Նասերին պրեզիդենտ ընտրելու մասին։

Հանրաքվեի միջոցով Եգիպտոսում Սիրիայի ու Եգիպտոսի միավորմանը հավանություն տրվեց ճնշող մեծամասնությամբ՝ 6 միլիոն 102 հազար 129 ձայնով, ընդդեմ 247-ի։ Գամալ Աբդել Նասերին Միացյալ Արաբական ռեսպուբլիկայի պրեզիդենտ ընտրելուն նույնպես հավանություն է տվել ճնշող մեծամասնությամբ՝ 6 միլիոն 102 հազար 116 ձայնով, ընդդեմ 265-ի։

Մեծ հաջողությամբ անցավ հանրաքվեն Սիրիայում։



Հանրաքվեին մասնակցեցին 1 միլիոն 313 հազար 70 մարդ։ Սիրիայի և Եգիպտոսի միավորման օգտին տրվեց 1 միլիոն 312 հազար 859 ձայն, ընդդեմ 211-ի։ Նասերին ռեսպուբլիկայի պրեզիդենտ ընտրելու օգտին՝ 1 միլիոն 312 հազար 80 ձայն, ընդդեմ՝ 990-ի։

Վերջերս Միացյալ Արաբական Ռեսպուբլիկային է միացել նաև Եմենի թագավորությունը։

Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի ստեղծման առթիվ Գամալ Աբդել Նասերը հայտարարել է. «Արաբ ժողովրդի միասնության դարավոր ձգտումները հնարավոր եղավ իրականացնել միայն այն բանից հետո, երբ մի շարք արաբական երկրներ անկախություն նվաճեցին»։

Միացյալ արաբական ռեսպուբլիկան դեմոկրատական պետություն է՝ պրեզիդենտի գլխավորությամբ։ Գործադիր իշխանությունն ամբողջ պետության ղեկավարը, որին օգնում են նրա նշանակած և նրա հանդեպ պատասխանատու մինիստրները։

Օրենսդրական իշխանությունը իրագործում է ընդհանուր խորհուրդը, Ռեսպուբլիկան ունի ընդհանուր դրոշակ, ընդհանուր ժողովրդական բանակ։ Ռեսպուբլիկայում բա-

յորը վայելելու են հավասար իրավունքներ և ունեն հավասար պարտականություններ։

Անցման շրջանում ռեսպուբլիկայի հիմնական սկզբունքներն են.

1. Միացյալ Արաբական պետությունը անկախ դեմոկրատական սուվերեն ռեսպուբլիկա է։ Նրա ժողովուրդները կազմում են արաբական ազգի մի մասը։

2. Ազատությունները երաշխավորվում են օրենքի շրջանակներում։

3. Գործադիր իշխանությամբ է օժտված ռեսպուբլիկայի պրեզիդենտը։

4. Միջոցներ կձեռնարկվեն Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի կոնստիտուցիա մշակելու համար։ Այնուհետև հրապարակվել են այլ սկզբունքներ, որոնք անցման շրջանում ծրագրային հարցեր են։

Երկրի քաղաքական կյանքը կնմանվի Եգիպտականին, կվերացվեն բոլոր քաղաքական պարտիաները, որոնք կմիավորվեն եգիպտական «Ազգային Միության» մեջ, որի գործունեությունը կտարվի պրեզիդենտի կողմից։

Միացյալ Արաբական ռեսպուբլիկայի քաղաքականությունը չեզոքության և բլոկներին չմիանալու քաղաքականություն է։

Սովետական Միությունը ողջունեց Միա-



ցյալ Արաբական Ռեսպուբլիկայի ստեղծումը և առաջինը ճանաչեց նրան։

«Սովետական կառավարությունը,— ասված է պրեզիդենտ Գամալ Աբդել Նասերին ուղղված ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ Վորոշիլովի շնորհավորական հեռագրում,— առաջնորդվելով ժողովուրդների ինքնորոշման և արաբ ժողովուրդների միասնության դարավոր ձըգտումների հարգման վսեմ սկզբունքներով, որոշում է ընդունել, որ Սովետական Միությունը ճանաչում է Միացյալ Արաբական Ռեսպուբլիկան որպես անկախ ու սուվերեն պետություն, և պատրաստակամություն է հայտնում նրա հետ պահպանել բարեկամական հարաբերություններ, ինչպես այդ եղել է Եգիպտոսի և Սիրիայի նկատմամբ»։

Վերջին մի քանի օրվա ընթացքում Միացյալ Արաբական Ռեսպուբլիկային ճանաչել են բացի Սովետական Միությունից և ՉԺՌ-ից մի քանի տասնյակ պետություններ, որոնց թվում Հնդկաստանը, Իտալիան, Լեհաստանը և այլ երկրներ։

Գ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԱՊՐԻԼ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## *1. Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 88-ԱՄՅԱԿԸ*

ա) Վ. Ի. Լենինը Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ստեղծողն է:

բ) Լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը:

գ) Անխախտ է ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական բարեկամությունը.

դ) Վ. Ի. Լենինը բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի մասին.

ե) Լենինիզմը խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար աշխատավորների պայքարի դրոշն է.

զ) Սովետական պետությունը վարում է տարբեր սոցիալական սիստեմների խաղաղ գոյակցության լենինյան քաղաքականություն:

### Գրականություն

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին *(1903—1953), առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1953:*



Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասնամյակի առթիվ *(1917—1957), ՍՄԿՊ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի և ՍՄԿՊ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի թեզիսները, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի սեպտեմբերի 17-ի համարում:*

*Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Լենինի մասին, Երկեր հ. 6, էջ 63—76, Հայպետհրատ, 1948:*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—* Պարտիան, *ՍՄԿՊ XX համագումարին տված զեկուցումից, էջ 150—172, Հայպետհրատ, 1956:*

## *2. ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ ԿԱՐԳԻ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ, ՄԵՔԵՆԱ-ՏՐԱԿՏՈՐԱՅԻՆ ԿԱՅԱՆՆԵՐԻ ՎԵՐԱԿԱԶՄՈՒՄԸ*

### Գրականություն

Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու մասին ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսները, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մարտի 1-ի համարում:*

Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու մասին ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայում ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսները, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մարտի 1-ի համարում:*

Համաժողովրդական քննարկում, *«Պրավդա»-ի*

*մարտի 3-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մարտի 4-ի համարում։*

ՄՏ կայանների վերակազմումը կոլտնտեսային կարգի զարգացման պահանջն է, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մարտի 8-ի համարում։*

### *3. ԵՐԿՐԻՆ ՏԱՆՔ ԱՎԵԼԻ ՇԱՏ ԵՎ ԱՎԵԼԻ ԲԱՐՁՐՈՐԱԿ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԱՐՏԱԴՐԱՆՔ*

#### Գրականություն

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի *հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին, Հայպետհրատ, 1956, մաս 2-րդ։*

*Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ, ճառ Երևան քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների ժողովում, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մարտի 12-ի համարում։*

*Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ,* ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Միության Սովետի ընտրությունների Երևանի № 717 ընտրական օկրուգի ընտրողների ժողովում, *տպագրված Ս. Հ.»-ի 1958 թվականի մարտի 11-ի համարում։*

### *4. ԺԱՄԱՆԱԿԻՆ ԵՎ ԲԱՐՁՐ ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾՈՒԹՅԱՄԲ ԿԱՏԱՐԵՆՔ ԳԱՐՆԱՆԱՑԱՆԸ*

#### Գրականություն

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի XX համագումարին,



*մաս երկրորդ, գյուղատնտեսություն, Հայպետհրատ, 1956։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի Դիմումը *կոլտնտեսականներին, կոլտնտեսուհիներին, ՄՏԿ-ների ու սովխոզների աշխատողներին, պարտիական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպություններին, սովետական ու գյուղատնտեսական օրգաններին, գյուղատնտեսության մասնագետներին և բոլոր աշխատողներին, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հունվարի 23-ի համարում։*

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության շեշտակի վերելքի համար, *տպագրված «Ս. Հ»-ի 1958 թվականի մարտի 11-ի համարում։*

Գյուղատնտեսության աշխատողների մարտական ծրագիրը, *տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1958 թվականի երկրորդ համարում։*

Լավ կազմակերպենք սերմնաբուծությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի փետրվարի 8-ի համարում։*

Պատրաստ ենք ծխախոտի ջերմոցային ցանքին, *տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1958 թվականի երկրորդ համարում։*

5. Բարելավենք մատղաշների խնամքը:

### Գրականություն

Բանաձև՝ Հայաստանի Կոմունիստական պարտիայի XIX համագումարի, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի փետրվարի 5-ի համարում:*

Կոլտնտեսության զոոտեխնիկը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի փետրվարի 8-ի համարում:*

Անասնաբուծական մթերքների արտադրության վերելքի համար, *տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1958 թվականի երկրորդ համարում:*

### *6. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԱԿՏԻՎՈՐԵՆ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԼԱՐՎԱԾՈՒԹՅԱՆ ԹՈՒԼԱՑՄԱՆ ԵՎ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԳՈՐԾԻ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ՀԱՄԱՐ*

### Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ, ճառ՝ արտասանած Մինսկ քաղաքում Բելոռուսիայի գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունում *1958 թվականի հունվարի 22-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հունվարի 27-ի համարում:*

ՍՍՌՄ կառավարության հայտարարությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի փետրվարի 21-ի համարում:*

Սովետական կառավարության հուշագիրը ԱՄՆ-ի կառավարությանը. *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մարտի 9-ի համարում:*



Ուղերձների փոխանակություն ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ա. Բուլգանինի և ԱՄՆ-ի պրեզիդենտ Դ. Էյզենհաուերի միջև, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մարտի 9-ի համարում:*

*Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ*— ճառ՝ Երևան քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների ժողովում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մարտի 12-ի համարում:*

---

## СОДЕРЖАНИЕ



---

Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ